Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ԴԵԿՏԵՄԲԵՐ 23 1961




# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

**Խմբագրության հասցեն.**— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։*

**СОДЕРЖАНИЕ**







**Адрес редакции—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 60, тел. 2-92-78.**




# ԻՆՉՊԵՍ ԱՆՑԿԱՑՆԵԼ ԶՐՈՒՅՑ «ՍՄԿԿ ԾՐԱԳԻՐԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԾՐԱԳԻՐ Է» ԹԵՄԱՅՈՎ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագիրը խոր կերպով հուզում և ուրախացնում է մեր երկրի ժողովուրդներին, ամբողջ աշխարհի աշխատավորներին։ Ծրագրի մեջ մատնանշված են մարդկության ամենալավագույն մտքերը, խոհերն ու հույսերը։*

*Մարդկության նվիրական ցանկությունն է եղել խաղաղություն տեսնել և վայելել խաղաղության պտուղները, ոչնչացնել հավիտենական թշնամանքն ու պատերազմները ժողովուրդների միջև, որոնք մարդկությունից խլում են միլիոնավոր կյանքեր և անհաշիվ հարստություններ։ ՍՄԿԿ Ծրագիրը հռչակում է, որ պարտիայի և ժողովրդի սրբազան գործն է՝ խաղաղության ապահովումը։*

*«ՍՄԿԿ Ծրագիրը խաղաղության ծրագիր է» թեմայով զրույց անցկացնելիս ագիտատորը ունկնդիրներին պար-*

զաբանում է, որ ՍՄԿՊ-ն իր արտաքին քաղաքականության գործունեության գլխավոր նպատակն է համարում ապահովել ՍՍՌՄ-ում կոմունիստական հասարակարգի կառուցման ու սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման խաղաղ պայմաններ և բոլոր խաղաղասեր ժողովուրդների հետ մեկտեղ մարդկությունը փրկել համաշխարհային բնաջնջող պատերազմից։ Ագիտատորը ունկնդիրներին պարզաբանում է, որ ստեղծագործ սովետական ժողովուրդը երբեք պատերազմի չի ձգտում, պատերազմը նրան հարկավոր չէ, որովհետև նա կառուցող ժողովուրդ է։

Սովետական Միությանը անծանոթ են տնտեսական ճգնաժամերը, նա գաղութային շուկաներ հափշտակելու ձգտում չունի, հետևաբար նրան խորթ են ազգային ճնշումները և մարդու շահագործումը մարդու կողմից. մեր երկրում չկան շահագործող դասակարգեր, որոնք սպառազինության մրցավազքից հարստանան։ «ՍՍՌՄ-ի փորձը,— ասված է Ծրագրում,— ապացուցեց, որ սոցիալիզմը և խաղաղությունը անբաժանելի են։ Սոցիալիզմի հզորությունը ծառայում է խաղաղության գործին»։



Զրույցն ավելի պատկերավոր դարձնելու նպատակով ագիտատորը փաստեր է բերում այն մասին, որ սովետական երկրի ամբողջ պատմությունը խաղաղության համար մղվող անդադրում պայքարի պատմություն է։ Հայտնի է, որ մեր երկրի ժողովուրդները, ազատագրվելով կալվածատերերի և կապիտալիստների շահագործումից, սովի և քայքայման ծանր պայմաններում հանդես բերին չտեսնված հերոսություն, որպեսզի հաղթանակի խաղաղությունը։ Եվ հաղթանակեց խաղաղությունը։ Քաղաքացիական կռիվներում ջախջախվեցին և ներքին, և արտաքին թշնամիները։ Այնուհետև երիտասարդ սովետական պետությունը հանուն խաղաղության պայքար մղեց միջազգային բազմաթիվ կոնֆերանսներում, ինչպես օրինակ, Ճենովայում, Ռապալլոյում, Ժնևում, Լոնդոնում և մյուս վայրերում։ Լենինյան դիվանագիտությունը մահացու հարված հասցրեց այն ագրեսորներին, որոնք ձգտում էին ոչնչացնել երիտասարդ Սովետական պետությունը, սանձազերծել նոր համաշխարհային պատերազմ։

Բայց, ցավոք սրտի, Սովետական Միությունը այն ժամանակ բավականաչափ ուժեր չուներ, որ կանխեր երկրորդ համաշ-

խարհային պատերազմը։ Այդ պատերազմը բորբոքեցին ֆաշիստները, արևմտյան տերությունների՝ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի ուղղակի օգնությամբ, որոնք մերժեցին սովետական բոլոր առաջարկները՝ ֆաշիստական ագրեսորների դեմ կոլեկտիվ անվտանգության սիստեմ ստեղծելու մասին։

Ֆաշիստական Գերմանիայի կողմից մեր երկրի վրա ուխտադրուժ հարձակում կատարելուց հետո սովետական ժողովուրդը Հայրենական պատերազմ մղեց հիտլերյան հափշտակիչների դեմ։ Դրանով փոխվեց երկրորդ համաշխարհային պատերազմի բնույթը։ Իմպերիալիստական, թալանչիական պատերազմից այն վերածվեց հակաֆաշիստական, ազատագրական պատերազմի։ Սովետական ժողովուրդը իր վրա վերցրեց ֆաշիզմի դեմ մղվող պատերազմի հիմնական ծանրությունը և ֆաշիստական ագրեսորներին ջախջախելու գործում մարդկությանը անգնահատելի ծառայություն մատուցեց։ Դրանով իսկ Սովետական Միությունը խաղաղություն ապահովեց ոչ միայն իր համար, այլև ամբողջ աշխարհի ժողովուրդների համար։

Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին պարզաբանում է, որ երկրորդ համաշխար-



հային պատերազմը ավարտվելուց հետո էլ ժողովուրդները չազատագրվեցին կործանիչ պատերազմների սարսափներից։ Իմպերիալիստական պետությունները, ամենից առաջ ԱՄՆ-ը, ժողովուրդների վրա դրեցին սպառազինության մրցավազքի բեռը, հարկադրեցին նրանց կրել «սառը պատերազմի» զրկանքներն ու աղետները։ Իմպերիալիստական պետությունները ագրեսիվ քաղաքականությամբ փորձում են երկարաձգել իրենց տիրապետությունը, արգելակել Սովետական Միության կողմից գլխավորվող համաշխարհային սոցիալիստական սիստեմի հզորացումը, ջախջախել ազգային-ազատագրական շարժումները։ Նրանց այդ փորձերը ձախողվեցին։

Զրույցի այդ մասում ագիտատորը խոսում է նաև այն մասին, որ հակառակ իմպերիալիստների ցանկությունների, աճում ու ամրապնդվում են սոցիալիզմի և դեմոկրատիայի ուժերը։ Այժմ իմպերիալիստական մոնոպոլիաների պարագլուխները իրենց փրկությունը գտնում են էկոնոմիկայի միլիտարիզացման և ագրեսիվ քաղաքականության մեջ, Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների դեմ պատերազմ նախապատրաստելու և սանձազերծե-

լու մեջ։ Այդ նպատակով ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, Արևմտյան Գերմանիայի և մյուս իմպերիալիստական պետությունները շարունակում են ստեղծել ռազմական բլոկներ։ Ատոմային ռումբը, որ ԱՄՆ-ի կառավարողները 1945 թվականին չարամտորեն պայթեցրին ճապոնական Խիրոսիմա և Նագասակի քաղաքների վրա, դարձել է պատերազմի հրձիգների ձեռքին մի միջոց՝ ժողովուրդներին շանտաժի ենթարկելու և ահաբեկելու համար։

Այժմ, ինչպես և շատ դարեր առաջ, տիրապետող ու շահագործող դասակարգերը դիմում են գնդակի ու սվինի, երբ իրենք անզոր են գտնվում դիվանագիտական միջոցներով հնազանդեցնելու ուրիշ ժողովուրդներին։ Դրա փայլուն օրինակը կարող է լինել անգլո-ֆրանսիական և իսրայելական ագրեսիան ընդդեմ Եգիպտոսի, ամերիկյան վարձկանների ավազակային հարձակումը Կուբայի վրա, ֆրանսիական իմպերիալիստների զինված ինտերվենցիան Ալժիրի, Թունիսի և մյուս ժողովուրդների վրա։

Իմպերիալիստների չարագործությունները մերկացնելու նպատակով ագիտատորը կարող է փաստեր բերել նաև այն մասին, որ երկրորդ համաշխարհային պատերազմը



վերջանալուց հետո էլ դեռևս չի եղել թեկուզ մեկ օր, որ երկրագնդի այս կամ այն մասում չկրակվեն ու չպայթեցվեն արկեր։ Իմպերիալիստները ձգտում են հրով ու սրով ճնշել գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները։

Հանուն կապիտալի իշխանությունը պահպանելու՝ իմպերիալիստները ձգտում են ինչ գնով էլ լինի նոր համաշխարհային պատերազմ բորբոքել։ Իսկ ժամանակակից պատերազմը մարդկությանը կբերի անթիվ ու անհաշիվ դժբախտություններ, որովհետև ստեղծված է մասսայական ոչնչացման ու կործանման ահավոր զենք։ Ըստ արտասահմանյան մի շարք գիտնականների հաշվումների մեկ ջրածնային ռումբը խիտ բնակեցված վայրերում կարող է ոչնչացնել 15 միլիոն մարդ։ Այնպիսի երկիր ոչնչացնելու համար, ինչպիսին է Անգլիան, վերջերս հայտարարել է Ջ. Բերնալը, կպահանջվի ընդամենը 5 խոշոր ջրածնային ռումբ։

«Ժողովուրդների ջանքերը,— ասված է ՍՄԿԿ Ծրագրում,— պետք է կենտրոնացվեն իմպերիալիստներին ժամանակին սանձելու, մահաբեր զենքը գործադրելու հնարավորությունից նրանց զրկելու վրա։ Գլխավորն այն

է, որ կանխվի ջերմամիջուկային պատերազմը, թույլ չտրվի, որ այն բռնկվի: Եվ մարդկանց ներկա սերունդը ի վիճակի է անելու այդ բանը»:

ՍՄԿՊ Ծրագիրը ոգևորում է ժողովուրդներին խաղաղության համար մղվող պայքարում, ամրապնդում հավատը իրենց ուժերի նկատմամբ: Այն վառ կերպով ցույց է տալիս, որ սոցիալիստական սիստեմը չտեսնըված հաջողության է հասել գիտության և տեխնիկայի առաջատար ճյուղերի բնագավառում, շատ ետ թողնելով խոշորագույն կապիտալիստական երկրներին: Սովետական Միությունը մեծ հաջողությունների է հասել տիեզերքը յուրացնելու գործում: «Վոստոկ» և «Վոստոկ—2» սովետական տիեզերական նավերի հաջող թռիչքները, որոնց ղեկավարում էին տիեզերագնաց օդաչուներ Յուրի Գագարինը և Գերման Տիտովը, համամարդկային նշանակություն ունեն: Կապիտալիստական աշխարհի ներկայացուցիչներն ստիպված են ճանաչել սոցիալիզմի ուժը և իրենց սեփական թուլությունը:

Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին պարզաբանում է, որ այժմ ամբողջ սոցիալիստական սիստեմի հզորությունը ի սպա-



է դրվել խաղաղության գործին, և դա գրավական է այն բանի, որ անպայման խաղաղությունը կհաղթի:

Խոսելով այն մասին, որ սոցիալիստական սիստեմը, պայքարելով իմպերիալիզմի և պատերազմի դեմ, դրանով իսկ որոշում է ժամանակակից հասարակության զարգացման գլխավոր բովանդակությունը և գլխավոր ուղղությունը, ագիտատորը ունկնդիրներին հիշեցնում է, որ այդ սիստեմը դարձել է բոլոր ազատասեր ուժերի ձգողականության կենտրոնը: Եվ, որ երկրագնդի վրա սոցիալիստական սիստեմի շնորհիվ կազմավորվել է խաղաղության մի մեծ գոտի, որի սահմանները գնալով ընդարձակվում են:

Հնդկաստանը, Ինդոնեզիան, Արաբական Միացյալ Ռեսպուբլիկան, Գանան, Մալին, Կուբան և շատ ուրիշ պետություններ վարում են անկախ քաղաքականություն, հրաժարվելով ռազմական բլոկներին մասնակցելուց:

Զրույցի այս մասում ագիտատորը պատմում է, որ Սովետական Միությունը հաջողությամբ բարեկամական փոխհարաբերություններ է զարգացնում և ամրապնդում Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երիտասարդ անկախ պետությունների

հետ։ Սովետական Միությունը, հարգելով նրանց սուվերեն իրավունքներն ու ինքնուրույնությունը, անշահախնդիր կերպով օգնում է այդ երկրներին, որպեսզի նրանք ամրապնդեն իրենց էկոնոմիկան։ Ասիայի և Աֆրիկայի 14 երկրներում Սովետական Միության օգնությամբ կառուցվում են ավելի քան 300 արդյունաբերական ձեռնարկություններ։ Այդ երկրներում կատարվող կառուցումների համար Սովետական Միությունը բաց է թողել ավելի քան 9 միլիարդ ռուբլի (հին գներով)։

«Պատերազմի վտանգի դեմ մղվող պայքարում ազատագրված երկրների ժողովուրդների և սոցիալիստական պետությունների ժողովուրդների ջանքերի միավորումը ընդհանուր խաղաղության մեծագույն գործոնն է: Մարդկության երկու երրորդի կամքը և ուժը արտահայտող այդ հզոր ճակատը կարող է նահանջի հարկադրել իմպերիալիստական ագրեսորներին»,— ասված է ՍՄԿԿ Ծրագրում։

Սովետական Միությունը ցույց է տալիս ամուր և հաստատուն խաղաղություն ապահովելու արմատական ուղին։ Այդ ուղին, բացատրում է ագիտատորը, ընդհանուր և լրիվ զինաթափումն է միջազգային խիստ



հսկողության ներքո։ Այդ դեպքում մարդկությունը միշտ կազատագրվի նոր պատերազմի սպառնալիքներից և ազգային հարստությունների անմիտ վատնումներից, որոնք առաջ են բերում սպառազինությունների մրցավազքը։ Ռազմական նախապատրաստությունների գիգանտ հնոցներում ամեն տարի այրվում է ավելի քան 100 միլիարդ դոլար։ Ինչպես մատնանշել է Միավորված Ազգերի Գլխավոր Ասամբլեայի 15-րդ սեսիայի Սովետական դելեգացիան, միայն պետությունների ռազմական նախապատրաստությունների մեկ տոկոսով կարելի է թույլ զարգացած երկրներում կառուցել և լրիվ սարքավորել ավելի քան 100 համալսարան։

Արհեստականորեն բորբոքելով պատերազմական հիստերիա, իմպերիալիստական տերությունները արագացնում են սպառազինությունների մրցավազքը։ Օրինակ, Արևմուտքի ագրեսիվ շրջանները, հրաժարվելով Գերմանիայի հետ խաղաղության պայմանագիր կնքելուց և Արևմտյան Բեռլինի հարցի շուրջ միտումնավոր կերպով պատերազմական հիստերիա բորբոքելով, ձգտում են արդարացնել այն ահռելի ռազմական ծախսերը, որ նրանք կատարում են այժմ։ Ըն-

թացիկ տարում ԱՄՆ-ը ռազմական նպատակների համար հատկացրել է 53 միլիարդ դոլար․ ի միջի այլոց, վերջերս ԱՄՆ-ի պրեզիդենտ Քեննեդին պահանջեց այդ հատկացումներին ավելացնել ևս 3,5 միլիարդ դոլար։

Ամերիկյան իմպերիալիստներից ետ չեն մնում նաև Արևմտյան Գերմանիայի իմպերիալիստները։ Ադենաուերի ցուցումով Բոննի պաշտպանության մինիստրությունը արդեն մշակել է հատուկ նախագիծ, որը նախատեսում է ԳՖՌ-ի 1962 թվականի ռազմական բյուջեն այս տարվա համեմատությամբ ավելացնել 20 տոկոսով։

Դրանով չի բավարարվում ագիտատորը։ Նա արևմտյան տերությունների իմպերիալիստների չարագործություններին հակադրում է Սովետական Միության մարդասիրական առաջարկությունները։ Սովետական Միությունը բոլոր երկրներին առաջարկում է, անկախ նրանց տարբեր սոցիալական սիստեմներից, խաղաղ գոյակցության սկզբունք։ Խաղաղ գոյակցությունը սոցիալիստական և կապիտալիստական երկրների միջև դարձել է խիստ անհրաժեշտություն։

Ինչպես մատնանշված է ՍՄԿՊ Ծրագրում,



խաղաղ գոյակցությունը ենթադրում է հրաժարվել պատերազմից որպես պետությունների միջև վիճելի հարցերը լուծելու միջոցից․ այդ հարցերը լուծել բանակցությունների միջոցով։ Իրավահավասարություն, փոխըմբռնում և վստահություն պետությունների միջև, հաշվի առնել միմյանց շահերը, չմիջամտել ներքին գործերին, ընդունել, որ յուրաքանչյուր ժողովուրդ իրավունք ունի ինքնուրույն կերպով լուծելու իր երկրի բոլոր հարցերը, խստորեն հարգել բոլոր երկրների սուվերենությունը և տերիտորիալ ամբողջականությունը, զարգացնել տնտեսական և կուլտուրական համագործակցությունը լիակատար հավասարության և փոխադարձ շահավետության հիման վրա։

Վերջին ժամանակներս իմպերիալիստական քաղաքականության գաղափարախոսները շատ են խոսում այսպես կոչված «սահմանափակ» և «լոկալ» պատերազմների մասին, նրանց անխուսափելիության և օրինական լինելու մասին։ Այս կապակցությամբ ագիտատորը ունկնդիրներին հիշեցնում է ՍՄԿՊ Ծրագրի այն մասը, որտեղ ասված է, որ Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր Ծրագրում հայտարարում է, որ նա ամբողջ սովետա-

կան ժողովրդի հետ միասին կպայքարի բոլոր տեսակի զավթողական և լոկալ պատերազմների դեմ, այդ թվում կապիտալիստական տերությունների միջև եղած պատերազմների դեմ։ Բայց կոմունիստները իրենց սրբազան պարտքն են համարում օգնել շահագործվող ժողովուրդներին՝ կապիտալիզմի դեմ մղվող նրանց պայքարում։

ՍՄԿՊ Ծրագրում կոնկրետ խնդիրներ են դրված միջազգային հարաբերությունների բնագավառում, որոնց իրագործումը հնարավորություն կտա հասարակության կյանքից ընդմիշտ վտարել պատերազմները և հաստատել միջազգային առողջ փոխհարաբերությունները ամբողջ աշխարհում։

Կոմունիզմը, դա ազատության թագավորություն է, Աշխատանք, Խաղաղություն և Եղբայրություն ժողովուրդների միջև։ Լենինյան մեծ պարտիայի գործունեությունն ուղղված է մեկ նպատակի՝ ներկա սերնդի համար կոմունիզմը դարձնել իրականություն։

Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

---



# ԶՐՈՒՅՑ ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՄԱՍԻՆ



ՍՄԿՊ XXII համագումարին Կենտրոնական Կոմիտեի տված հաշվետվության առթիվ ընդունված բանաձևում արձանագրված է, որ «ազգային-ազատագրական շարժման հուժկու հարվածների տակ փաստորեն փուլ է եկել գաղութային սիստեմը»։ Պատմության մեջ երկար ժամանակ իմպերիալիստական պետությունները անխնա կեղեքել են գաղութների ժողովուրդներին, պահել նրանց ստրկության մեջ և անողոքաբար բնաջնջել։ Ահա մի շարք փաստեր, որոնք վերաբերում են գաղութակալության ամոթալի ռեժիմին։

Աֆրիկայի գաղութներում ծնված յուրաքանչյուր չորրորդ երեխան մեռնում է մինչև մեկ տարեկան հասակը։ Այդ աշխարհամասի գաղութներում մարդկանց կյանքի միջին տևողությունը 33 տարի է։ Ներկայումս 30 միլիոն բնակչություն ունեցող Նիգերիայում ընդամենը կա 300 բժիշկ, այսինքն յուրաքանչյուր 133 հազար բնակչին ընկնում է





մեկ բժիշկ, իսկ յուրաքանչյուր 3.700 մարդուն՝ մեկ մահճակալ։ Ժամանակակից Աֆրիկայի դպրոցական հասակի 25 միլիոն երեխաներից 17 միլիոնը հնարավորություն չունի սովորելու։

Միայն Բելգիայի կեսդարյա տիրապետության ժամանակաշրջանում Կոնգոյի բնակչությունը կրճատվել է մոտ երկու անգամ, իսկ ֆրանսիական տիրապետության 60 տարվա ընթացքում Մադագասկարի բնակչությունը կրճատվել է ավելի քան երկու անգամ։ Այդ և նման գաղութային երկրներում մարդիկ մեռնում են սովից ու հիվանդություններից, ապրելու ամենատարրական պայմանների բացակայությունից։ Գաղութներում ահավոր չափերի է հասել երեխաների մահացությունը։ Մինչև օրս բոլոր գաղութներում աշխատանքային օրը ամենաերկարատևն է, կյանքը՝ ամենակարճատևը։ Աֆրիկայի բնակչության ավելի քան 80 տոկոսը և Լատինական Ամերիկայի բնակչության ավելի քան 40 տոկոսը անգրագետ են։ ՍՄԿՊ Ծրագրի մասին տված իր զեկուցման մեջ Ն. Ս. Խրուշչովը ցույց տվեց, որ իմպերիալիզմը ամբողջ մայր ցամաքներ դարձրել է ժողովուրդների բանտ։ իմպերիալիզմը ստրկության շղթաներով շղթայել



է հարյուր միլիոնավոր մարդկանց, հեռու է պահել նրանց քաղաքակրթությունից, այլանդակել Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրների էկոնոմիկան, նրան տալով միակողմանի, ագրարային-հումքային բնույթ։ Զարմանալի չէ, որ Ասիայի և Աֆրիկայի թույլ զարգացած երկրներում բնակչության մեկ շնչին ընկնող տարեկան եկամուտը 20—25 անգամ ցածր է, քան Ամերիկայի Միացյալ Նահանգներում։ Գաղութային երկրները միշտ էլ հանդիսացել են իմպերիալիստների կողմից հարստահարման, բնական ռեսուրսների կողոպտման օբյեկտներ։ Միայն Աֆրիկայից իմպերիալիստներն ստացել են ալմաստի համաշխարհային արտադրանքի 98,4 տոկոսը, կոբալտի 66,4 տոկոսը, ոսկու 45 տոկոսը, ֆոսֆատի 35 տոկոսը, մարգանեցի 29 տոկոսը, պղնձի 25 տոկոսը։

Գաղութային ամոթալի սիստեմին առաջին մեծ հարվածը հասցրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան։ Հոկտեմբերը լուսավորեց գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների ազատության ուղին։ Գաղութակալության փլուզումը հանդիսանում է նաև սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծման շնորհիվ միջազգային բարե-

նպաստ պայմաններում սկսված ազգային-ազատագրական պայքարի վերելքի արդյունքը։ Ազգային-ազատագրական շարժման գրոհի տակ գաղութային ստրկության սիստեմի կործանումը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումից հետո իր պատմական նշանակությամբ երկրորդ երևույթն է։

Մեր ժամանակի նշանավոր գործոններից մեկը դարձել է այն, որ խորտակվում է իր դարն ապրած գաղութային սիստեմը։ Բնորոշ է, որ մինչև II համաշխարհային պատերազմը ընդամենը 63 ինքնուրույն պետություն կար աշխարհում (դրանց մեջ մտնում են նաև այս կամ այն չափի կախման մեջ գտնվող երկրներ)։ Դրությունը հիմնովին փոխվեց հետպատերազմյան ժամանակաշրջանում։ Գաղութային լուծը անվերադարձ թոթափվեց և ժողովրդական ռևոլյուցիաների հետևանքով ստեղծվեցին Չինական ժողովրդական Ռեսպուբլիկան, Կորեական ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան և Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան։ Այդ երկրները ներկայումս հաջողությամբ սոցիալիզմ են կառուցում։ Բացի դրանից, Հնդկաստանի, Ցեյլոնի, Ինդոնեզիայի, Բիրմայի, Մալայայի, Կամ-



բոջայի, Սիրիայի, Իրաքի, և այլ երկրների ժողովուրդները ազատվեցին գաղութային սիստեմից և ստեղծեցին իրենց անկախ պետությունները։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո գաղութային ու կիսագաղութային լծից ազատագրվեցին 1 միլիարդ 600 միլիոն ժողովուրդներ, որոնք ապրում են 43 միլիարդ քառակուսի կիլոմետր տերիտորիայի վրա։ Ներկայումս երկրագնդում գոյություն ունեն 107 պետություններ։

Գաղութային լծից, իմպերիալիզմի շղթաներից մեկը մյուսի ետևից ազատագրվում են Աֆրիկայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի երկրները։ Միայն վերջին վեց տարվա ընթացքում 28 պետություններ քաղաքական անկախություն նվաճեցին։ Ընդհանրապես, գաղութային կայսրության փլատակների վրա ստեղծվել են 42 սուվերեն պետություններ։ Օրինակ, Աֆրիկայի մայր ցամաքում՝ Կոնգոյի ռեսպուբլիկան, Մալիի ֆեդերացիան, Սոմալիի Ռեսպուբլիկան, Մալգաշական Ռեսպուբլիկան, Դագոմեյական Ռեսպուբլիկան և շատ ուրիշներ դարձել են անկախ ազգային պետություններ։ Աֆրիկայի մնացած բոլոր շրջաններում, ուր ապրում է մոտ 50 միլիոն մարդ, շարունակ-

վում է համառ պայքարը անկախության
համար։ Աֆրիկյան ժողովուրդների ազգային-
ազատագրական շարժումն անհաղթահարելի
է, որովհետև այն համաժողովրդական բը-
նույթ է կրում։ Մեր աչքի առաջ ստեղծվում
է գաղութակալության շղթաներից ազատա-
գրված Աֆրիկայի միանգամայն նոր քաղա-
քական քարտեզը։ Ն. Ս. Խրուշչովը մատնա-
նշել է, որ «Մեծանում է Աֆրիկայի ազատ
պետությունների ընտանիքը։ Ամրապնդվում
և կոփվում է աֆրիկյան ժողովուրդների
միասնությունն ու համերաշխությունը՝ ի-
րենց ապագայի համար, ազատության և
անկախության համար, խաղաղության հա-
մար մղվող ընդհանուր պայքարում հետագա
հաջողություններ ձեռք բերելու այդ կարևոր
պայմանը»։
Բայց չպետք է մոռանալ, որ թեև գաղու-
թային սիստեմը փուլ է եկել, սակայն նրա
մնացորդները վերացված չեն։ Գաղութային
խայտառակ ռեժիմի պայմաններում դեռևս
մի քանի տասնյակ միլիոն մարդ է ապրում։
Ապա նայենք մեր օրերի Աֆրիկային, նը-
րա քարտեզի վրա դեռևս որպես գաղութներ
են մնացել Ալժիրը, Քենիան, Տանգանիկան,
Ուգանդան, Ռուանդա-Ուրունդին, Անգոլան,
Մոզամբիկը, Հյուսիսային Ռոդեզիան, Հա-



րավային Ռոդեզիան, Սիերա-Լեոնեն, Հա-
րավ-Արևմտյան Աֆրիկան, Զանզիբարը և
այլն։ Ասիայի մայր ցամաքում գաղութային
վիճակում տառապում են Արևմտյան Իրիանի,
Ամերիկայի մայր ցամաքում Պուերտո-Ռի-
կոյի և այլ տերիտորիաների ժողովուրդնե-
րը։
Գաղութային ժողովուրդների ամենամեծ
ու անկեղծ բարեկամները սոցիալիզմի եր-
կրներն են։ Սոցիալիստական երկրները բազ-
մակողմանի աջակցություն են ցույց տալիս
իրենց ազատագրության համար պայքարող
ժողովուրդներին։ Նրանք, պաշտպանելով
գաղութային ճնշման բոլոր ձևերի ոչնչացու-
մը, ամեն կողմից նպաստում են գաղութա-
յին կայսրությունների ավերակների վրա
ծագող պետությունների սուվերենության
ամրապնդմանը։ Գաղութային և կիսագա-
ղութային լուծը թոթափած ժողովուրդների
հետ կնքած եղբայրական դաշինքը սոցիա-
լիստական աշխարհի երկրները համարում
են իրենց արտաքին քաղաքականության
անկյունաքարերից մեկը։ Այդ դաշինքը, աս-
ված է ՍՄԿՊ Ծրագրում, հիմնված է
համաշխարհային սոցիալիզմի և համաշ-
խարհային ազգային-ազատագրական շարժ-
ման կենսական շահերի ընդհանրության

վրա։ Սոցիալիստական երկրները գտնում են, որ պետք է լիակատար ու վերջնականորեն վերացնել գաղութային ռեժիմի բոլոր ձևերն ու տարատեսակները, հիմնովին լիկվիդացնել մարդկության այդ խայտառակությունը, բարբարոսությունն ու վայրենությունը։

ՍՄԿՊ XXII համագումարի ամբիոնից Ն. Ս. Խրուշչովը հայտարարեց, որ գաղութատիրությունը դատապարտված է, և նա կթաղվի խոր գերեզմանում։ Նա մատնանշեց, որ մեր դարի վաթսունական թվականները պատմության մեջ կմտնեն որպես իմպերիալիզմի գաղութային սիստեմի լիակատար փլուզման տարիներ։

Ներկայումս մարդկության պատմության մեջ բացվել է նոր դարաշրջան, երբ նախկին գաղութային երկրների ժողովուրդներն ըսկըսել են ակտիվորեն մասնակցել ամբողջ աշխարհի ճակատագիրը վճռելու գործին։

Չնայած այն բանին, որ ազգային-ազատագրական շարժման հուժկու հարվածների տակ խորտակվում է գաղութակալությունը, իմպերիալիստները ամեն կերպ ձգտում են պահպանել գաղութային շահագործումը նոր մեթոդներով ու ձևերով։ Այդ նոր մեթոդների ու ձևերի մեջ մտնում են գաղութային պատերազմները, ռազմական բլոկները,



դավադրությունները, տեռորը, քայքայիչ գործունեությունը, տնտեսական ճնշումը, կաշառումը և այլն։ Մնացած գաղութներում իմպերիալիստները հրահրում են ազգային ու ցեղային գժտություններ, պառակտում ազգային-ազատագրական շարժումները։ Ժամանակակից պայմաններում էլ գաղութատիրության գլխավոր պատվարը մնում է իմպերիալիզմը և առաջին հերթին Ամերիկայի Միացյալ Նահանգների իմպերիալիզմը։ Պարզ է, որ գաղութային երկրների համազգային խնդիրների լուծման հիմնական պայմանը իմպերիալիզմի դեմ մղվող հետևողական պայքարն է։ Չպետք է մոռանալ նաև այն հանգամանքը, որ գաղութներում ազգային-ազատագրական ռևոլյուցիան չի ավարտվում միայն քաղաքական անկախության նվաճմամբ։ Ինչպես մատնանշում է ՍՄԿՊ նոր Ծրագիրը, այդ անկախությունը խախուտ կլինի և ֆիկցիայի կվերածվի, եթե ռևոլյուցիան խոր փոփոխությունների չհանգեցնի սոցիալական ու տնտեսական կյանքում, չլուծի ազգային վերածննդի կենսական խնդիրները։ Պարտիայի Ծրագրում մի անգամ ևս ընդգծված է, որ ազգային-ազատագրական ռևոլյուցիաները մինչև վերջ հասցնելու գլխավոր պայմանը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքն է։ Այդ

դաշինքը ազգային լայն ճակատի այն միջուկն է, որի շուրջը հավաքագրվում են ազգային բուրժուազիան և դեմոկրատական ինտելիգենցիան։

Վերլուծելով ազգային-ազատագրական շարժման հաղթանակի հետևանքով ստեղծված նոր, անկախ երկրների տնտեսական ու քաղաքական վիճակը, ՍՄԿՊ Ծրագիրը մատնանշեց, որ «տնտեսական տեսակետից թույլ զարգացած երկրների ժողովուրդների համար լայն հեռանկարներ են բացվում ազգային դեմոկրատիայի պետության գոյացման ու զարգացման ուղիներում»։ Ազգային դեմոկրատիայի պետության քաղաքական հիմքը,— նշվում է Ծրագրում,— առաջադիմական, հայրենասիրական բոլոր ուժերի միավորումն է, ուժեր, որոնք պայքարում են ազգային անկախության լիակատար ապահովման համար և հենվում են պրոլետարիատի ու գյուղացիության դաշինքի վրա։ Ազգային դեմոկրատիայի պետությունների գլխավոր խնդիրն է՝ ընթանալ սոցիալական առաջադիմության ուղիով, հետևողականորեն պայքարել գաղութային սիստեմի լիակատար վերացման ու խաղաղության ամրապնդման համար։

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ



## ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՎԵՐՍՏՈՒԳԻՉ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԸ

ՍՄԿՊ Ծրագրում նախատեսված է գյուղատնտեսական մթերքների ասպարեզում ամբողջ բնակչության ու ժողովրդական տնտեսության պահանջները լրիվ բավարարելու նպատակով 10 տարում գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր ծավալը մեծացնել մոտավորապես երկուս ու կես անգամ։ Այդ կարևորագույն առաջադրանքը կատարելու գործում մեծ անելիքներ ունեն նաև կոլտնտեսությունների վերստուգիչ հանձնաժողովները, որոնք կոչված են արտելային տնտեսություններում հասարակական վերահսկողություն սահմանելու համար։ Վերստուգիչ հանձնաժողովը կոլտնտեսության ղեկավար օրգանների աշխատանքում հատուկ տեղ է գրավում, նա ընտրվում է կոլտնտեսության անդամների ընդհանուր ժողովի կողմից երկու տարին մեկ անգամ։

Վերստուգիչ հանձնաժողովը ղեկավարվում է գյուղատնտեսական արտելի Կանոնադրությամբ, որի 25-րդ հոդվածի համաձայն վերստուգում է վարչության տնտեսական, ֆինանսական ամբողջ գործունեությունը, ստուգում է, թե արդյոք դրամական ու բնամթերային եկամուտները սահմանված կարգով մուտք արվա՞ծ են կոլտնտեսությունում, պահպանվո՞ւմ է միջոցները ծախսելու վերաբերյալ կանոնադրությամբ նախատեսված կարգը, բավարար հոգատարությամբ պահպանվո՞ւմ է արտելի գույքը, չկա՞ն կոլտնտեսության գույքի և դրամական միջոցների հափշտակումներ ու վատնումներ, ինչպե՞ս է կատարում կոլտնտեսությունը իր պարտավորությունները պետության հանդեպ, ինչպե՞ս է վճարում իր պարտքերը և ինչպես է գանձում իր ստանալիքն արտելի պարտապաններից։

Դրա հետ միասին վերստուգիչ հանձնաժողովն ստուգում է կոլտնտեսության հաշիվները իր անդամների հետ, երևան բերում թերհաշվառման, աշխօրերի ոչ ճիշտ գրանցման, դրամական միջոցների սխալ ծախսման, կոլտնտեսականների հետ հաշվարկները ժամանակին չկատարելու դեպքեր և այլն։

Սովորաբար վերստուգիչ հանձնաժողովի



ստուգումները լինում են եռամսյակային և տարեվերջին։ Կատարած ստուգումների առթիվ կազմվում են համապատասխան ակտեր և ներկայացվում կոլտնտեսականների ընդհանուր ժողովի քննարկմանը։

Վերստուգիչ հանձնաժողովի կազմում կարող են ընտրվել 3—5 հոգի, և միայն տվյալ կոլտնտեսության անդամները։

Վերստուգիչ հանձնաժողովի կազմում չեն կարող ընտրվել կոլտնտեսության վարչության անդամները և նրանց մոտիկ բարեկամները, ինչպես նաև կոլտնտեսության պաշտոնատար անձինք՝ գանձապահը, պահեստապետը, հաշվետարը, տնտեսության առանձին ճյուղերի կամ բաժինների ղեկավարները։

Կոլտնտեսությունների նորմալ զարգացման գործում կարևոր նշանակություն ունի հաշվառման ճիշտ կազմակերպումը։ Ուստի հանձնաժողովը իր ստուգումների ընթացքում պետք է վերացնի հաշվառման գործում եղած սխալները, այդ ուղղությամբ իսկական կարգ ու կանոն ստեղծի։

Կոլտնտեսային վերստուգիչ հանձնաժողովի կարևոր գործերից մեկն էլ դրամական միջոցների մուտքը և նրանց ծախսումների գործարքները սիստեմատիկաբար ստուգելն է։

Այդ արվում է նրա համար, որպեսզի դրամական միջոցները և նրա ծախսումները կատարվեն կոլտնտեսության ընդհանուր ժողովի կողմից հաստատված ֆինանսական պլանին համապատասխան։

Առանձին կոլտնտեսություններում հաճախ ավելորդ, ոչ նպատակային ծախսումներ են կատարվում, որով խախտվում է ֆինանսական կարգապահությունը և ֆինանսական դժվարություններ ստեղծում կոլտնտեսություններում, այսինքն պակասում է կոլտնտեսականներին բաշխվող եկամուտների չափը։ Ինչ խոսք, որ հանձնաժողովը պետք է աչալուրջ լինի և թույլ չտա, որ կոլտնտեսային արտադրության հետ կապ չունեցող ավելորդ ծախսումներ կատարվեն։

Անբաժանելի ֆոնդի ավելացումը կոլտնտեսություններում կարևոր նշանակություն ունի, որովհետև այդ հատկացումներով ավելանում են կոլտնտեսությունների կապիտալ միջոցները, կատարվում են արտադրական, կուլտուր-կենցաղային, բնակելի շենքերի կառուցումներ, մեքենայացվում են աշխատատար պրոցեսները, գցվում են նոր այգիներ, ձեռք են բերվում տոհմային, մթերատու անասուններ, ոռոգելի են դարձվում ցանքերը և այլն։ Հետևաբար հանձնաժողովը պետք է



հետևի, որպեսզի կոլտնտեսության դրամական եկամուտներից անբաժանելի ֆոնդին հատկացումներ կատարվեն ժամանակին։

Կոլտնտեսության ֆինանսական տնտեսությունը ճիշտ վարելու համար վերստուգիչ հանձնաժողովը ամեն կերպ պետք է աշխատի հասնել այն բանին, որպեսզի կոլտնտեսություններում իսպառ լիկվիդացվեն պարտքերը և գերավանսավորումները։ Հայտնի է, որ կոլտնտեսությունում պարտքերը և առանձնապես գերավանսավորման պարտքերը առաջանում են կոլտնտեսականներին բնամթերքով և դրամով ավանս տալու կարգը խախտելու հետևանքով։ Վերստուգիչ հանձնաժողովը պետք է ստուգի և պարզի, թե կոլտնտեսության վարչությունը կոլտնտեսականներին ավանսավորելիս հաշվի առնո՞ւմ է կոլտնտեսականների վաստակած աշխօրերի քանակը, կամ աշխօրերին բաշխվելիք եկամուտների չափը, չկա՞ն առանձին անձինք (առանձնապես պաշտոնատար անձինք), որոնք, օգտվելով իրենց պաշտոնական դիրքից, ավանսավորման կարգով ավելի դրամ և մթերքներ են ստացել, քան պահանջատեր մյուս կոլտնտեսականները, չկա՞ն արդյոք այնպիսիները, որոնք անցյալից պարտք ունենալով հանդերձ՝ կրկին գերավանսավոր-

ման կարգով մթերք կամ դրամ են ստացել։

Կոլտնտեսությունների հանրային սեփականությունը պահպանելու գործում իր իրավունքները կատարելու նպատակով վերստուգիչ հանձնաժողովը առաջին հերթին պետք է պարզի՝ թե ինչպես է պահպանվում և օգտագործվում հանրային ունեցվածքը, գոյություն չունե՞ն, արդյոք, գույքի փչացման, մեքենաների, բանող և մթերատու անասունների կորստի կամ հափշտակման դեպքեր։

Հանրային ունեցվածքի առկայությունը պետք է ստուգել ու պարզել բրիգադաներում, ֆերմաներում, դրանց պահպանման համար պատասխանատու անձանց ներկայությամբ և այդպիսիք համեմատել հաշվապահական գրանցումների հետ։ Հանրային ունեցվածքի ավելցուկ կամ պակասորդ հայտնաբերելու դեպքում վերստուգիչ հանձնաժողովը պարզում է նրա պատճառները և կոլտնտեսության վարչության միջոցով ձեռք առնում անհրաժեշտ միջոցներ։

Որքան մեծ են կոլտնտեսականների վերստուգիչ հանձնաժողովների իրավունքները, այնքան էլ մեծ է նրանց պատասխանատվությունը։

Դ. ԽԱՉԱՏՐՅԱՆ



# ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

## (Թվեր և փաստեր)

Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր բարձրագույն նպատակն է համարում բարձրացնել սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը։ Եվ նա անում է ամեն ինչ՝ իրագործելու այդ վեհ նպատակը։ Ամեն տարի հսկայական միջոցներ են հատկացվում բնակարանային և կոմունալ շինարարության համար։ Ահա այդ մասին թվեր ու փաստեր։

1960 թվականին մեր երկրում բնակարանային ֆոնդը կազմեց 958 միլիոն քառակուսի մետր, 1913 թվականին եղած 180 միլիոն քառակուսի մետրի փոխարեն։ Այս նշանակում է, որ սովետական երկրում 4 անգամ ավելի բնակարան է կառուցվել, քան կառուցվել է Ռուսաստանում նրա ամբողջ պատմության ընթացքում։

Այժմ յուրաքանչյուր տարի մենք ավելի շատ բնակարան ենք կառուցում, քան կառուցում էինք նախապատերազմյան 10 տարիների ընթացքում։

Կապիտալիստական աշխարհում ներկայումս կա

ապրելու համար ոչ պիտանի 500 միլիոն բնակարան։ Այս խոշոր թվի հետևում կանգնած է կապիտալիստական աշխարհի բնակչության հսկայական մասը։

Պատերազմական ավերածություն չտեսած ԱՄՆ-ում այժմ 15 միլիոն մարդ ապրում է հետնախորշերում։

Անգլիական քաղաքներ Լիվերպուլում բնակարանների 43 տոկոսը, Մանչեստրում 32 տոկոսը պիտանի չեն բնակության համար։ Լոնդոնի հետնախորշերում, որոնք անգլիական թերթերից մեկը համարում է խայտառակություն քաղաքակիրթ հասարակության համար, իրենց խղճուկ գոյությունն են քարշ տալիս 300 հազար մարդ։

Սկսած 1957 թվականից Սովետական Միությունը աշխարհում գրավում է առաջին տեղը 1.000 բնակչին ընկնող բնակարանների թվով։ Ընթացիկ տարում ՍՍՌՄ-ում յուրաքանչյուր 1.000 բնակչին հասավ 14 բնակարան, ԱՄՆ-ում՝ 7,2, Ֆրանսիայում՝ 7,1, Անգլիայում՝ 5,9 բնակարան։

Կապիտալիստական Եվրոպայի 17 երկրներ և ԱՄՆ-ը 1955 թվականին կառուցեցին 3 միլիոն 213 հազար բնակարան, իսկ 1960 թվականին՝ 3 միլիոն 269 հազար բնակարան։ Հինգ տարվա ընթացքում բնակարանների շինարարության չափը այդ երկրներում աճեց ընդամենը 1,6 տոկոսով։



Սովետական Միությունում 1955 թվականից կառուցվեց մեկ և կես միլիոն, իսկ 1960 թվականին՝ 3 միլիոն բնակարան։ Այսպիսով բնակարանային շինարարությունն աճեց 2 անգամ։

Եթե նկատի ունենանք շինարարության ժամանակակից տեմպերը, ապա 1961—1970 թվականներին կապիտալիստական Եվրոպայի 17 երկրներում և ԱՄՆ-ում, որտեղ բնակչությունը կազմում է 520 միլիոն մարդ, կկառուցվի 34 միլիոն բնակարան։

Այդ նույն ժամանակաշրջանում ՍՍՌՄ-ում կկառուցվի 36 միլիոն բնակարան։ Իսկ 1971—1980 թվականներին մեր երկրում կկառուցվի մոտ 50 միլիոն բնակարան։

Մեր երկրում բնակարանային վարձը ամենացածըրն է աշխարհում։ Այն կազմում է ընտանիքի եկամուտների 4—5 տոկոսը, իսկ կապիտալիստական երկրներում այն կազմում է ընտանիքի եկամտի 20—30 տոկոսը։

Բնակարանային շինարարության արագ թափը հնարավորություն կտա առաջիկա տասնամյակում (1961—1970 թթ.) հիմնականում լուծել սովետական մարդկանց բարեկարգ բնակարաններով ապահովելու հարցը։ Իսկ հաջորդ տասնամյակում յուրաքանչյուր

ընտանիք, ներառյալ նաև նորապսակները, կապահովվեն բարեկարգ բնակարաններով։

Առաջիկա քսանամյակի վերջում մեր երկրում հնարավոր կլինի հասարակության հաշվին ապահովել բնակարաններից, իսկ ապա նաև կոմունալ ծառայություններից ձրի օգտվելը։

Առաջիկա 20 տարիների ընթացքում բնակարանային և կոմունալ շինարարության համար հատկացվող միջոցների տնտեսման մեկ տոկոսով կարելի է կառուցել 100 հազար բնակչությամբ 20 նոր քաղաքներ։

Վերջին տարիներին շինարարությունը դարձել է ժողովրդական տնտեսության խոշոր ինդուստրիալ ճյուղերից մեկը, որի մեջ զբաղված են 6,5 միլիոն աշխատավորներ։

Մինչպատերազմյան ժամանակաշրջանի հետ համեմատած այժմ շինարարության մեջ էքսկավատորների թիվը ավելացել է 20 անգամ, վերամբարձ կռունկներինը՝ 48 անգամ, բուլդոզերներինը՝ 54 անգամ։

Մեր երկրում մինչև տարվա վերջը կգործեն 190 տնաշինական կոմբինատներ։

ՍՍՌՄ-ում 1960 թվականին կառուցվել և շահագործման է հանձնվել 2 միլիոն 400 հազար բնակարան, բացի դրանից, կոլտնտեսականների և գյուղա-



կան ինտելիգենցիայի կողմից կառուցվել է 625 հազար բնակելի տուն։ Իսկ ԱՄՆ-ում (ներառյալ նաև Ալյասկան և Հավայան կղզիները) 1960 թվականին կառուցվել է ընդամենը 1 միլիոն 300 հազար բնակարան։

Երկրի ամբողջ շինարարների մեկ երրորդը այժմ ունի միջնակարգ, միջնակարգ-տեխնիկական և բարձրագույն կրթություն։

Պարտիայի XX և XXII համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում շինարարության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 60 տոկոսով։

Այժմ բնակարանային և կոմունալ շինարարության համար հատկացվող գումարը երկու անգամ ավելի է, քան 1955 թվականին։

Անճանաչելիորեն փոխվել է Սովետական Հայաստանի քաղաքների և գյուղերի տեսքը։ Սովետական իշխանության տարիներին մեր ռեսպուբլիկայում բնակարանային շինարարությունն ստացել է հուժկու թափ։ Միայն վերջին 15 տարում Սովետական Հայաստանում կառուցվել ու շահագործման է հանձնվել ավելի քան 1.600 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Եթե 1926 թվականին Երևան քաղաքն ուներ ընդամենը 280—290 հազար քառակուսի մետր բնակելի

տարածություն, որի մեծ մասը կավից էր կառուցված, անյա այժմ յուրաքանչյուր երկու տարին մեկ շահագործման է հանձնվում մոտավորապես այնքան բնակելի տարածություն, որքան նա ուներ 1926 թվականին։

Մեր ռեսպուբլիկայում 1921 թվականից մինչև ընթացիկ յոթնամյակի սկիզբը կառուցվել և շահագործման են հանձնվել մոտավորապես 3 միլիոն ընդհանուր մակերեսով բնակելի տներ։

Միայն յոթնամյակի ընթացքում Սովետական Հայաստանում նախատեսվում է կառուցել ավելի քան չորս միլիոն քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տարածություն, կամ մեկ միլիոն քառակուսի մետրով ավելի, քան կառուցվել է նախորդ 38 տարիների ընթացքում։

Միայն այս տարի կկառուցվի և շահագործման կհանձնվի 11 հազար բնակարան, կամ 341 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, 100 հազարով ավելի, քան 1960 թվականին։

Երևան քաղաքում այս տարի շահագործման կըհանձնվի 5.400 բնակարան։

Բնակարանային շինարարության արագ տեմպերի համար, ռեսպուբլիկայում ստեղծվում է հզոր ինդուստրիալ բազա։ Յոթնամյակի վերջում ռեսպուբլիկայում կաշխատեն մի շարք տնաշինարարական կոմբինատ-



ներ, որոնց տարեկան հզորությունը կկազմի 245 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

Մեր ռեսպուբլիկայում լայն թափ է ստանում խոշորապանել տների կառուցումը։ Եթե 1960 թվականին շահագործման հանձնվեց 6 խոշորապանել տուն՝ 7.700 քառակուսի մետր բնակելի տարածությամբ, ապա մինչև 1961 թվականի վերջը շահագործման կհանձնվի 21 հազար քառակուսի մետր։

Առաջիկա քսանամյակում Սովետական Հայաստանում է՛լ ավելի լայնորեն կծավալվի բնակարանային շինարարությունը, որը թույլ կտա 1965 թվականին ռեսպուբլիկայի քաղաքներում և բանվորական ավաններում յուրաքանչյուր շնչին ընկնող բնակելի տարածությունը հասցնել 9,7 քառակուսի մետրի, 1970 թվականին՝ 13,5 և 1980 թվականին՝ 16,5 քառակուսի մետրի։

# ԿՐԵՄԼԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՆԵՐԻ ՊԱԼԱՏԸ

Մոսկովյան Կրեմլի հին բլուրների վրա, որտեղ հարյուրամյակների ընթացքում ճարտարապետական բազմապիսի հուշարձաններ են կառուցվել, սովետական մարդիկ այս տարի ավարտեցին ճարտարապետական սքանչելի անսամբլի՝ Կրեմլի Համագումարների պալատի կառուցումը։ Այդ նորակառույց պալատում տեղի ունեցավ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII պատմական համագումարը։

Նոր պալատի կառուցումն իրականացվել է Մոսկվա քաղաքի շինարարական կազմակերպությունների կողմից ռեկորդային կարճ ժամկետում՝ մեկ և կես տարում։ Նրա նախագծի հեղինակներն են ճարտարապետներ՝ Մ. Պոսոխինը, Ա. Մնդոյանցը, Յ. Ստամոն, Պ. Շտելլերը, Ն. Շչեպետիլնիկովը, իսկ կառուցող ինժեներները՝ Գ. Լվովը, Տ. Մելիք-Առաքելյանը և Ս. Շկոլնիկովը։

Կրեմլում գտնվող մյուս շինությունները



արտացոլում են իրենց կառուցման դարաշրջանը։ Նոր պալատն էլ արտացոլում է սոցիալիզմի ու կոմունիզմի դարաշրջանի վեհությունն ու հումանիզմը։ Իր գեղեցկությամբ հեքիաթային այդ շինությունը կառուցված է երկաթբետոնից, ապակուց, ալյումինից և մարմարից։

Ուշագրավ է այն, որ նորակառույցի ձևը և գծերը այնպիսին են, որ արտաքինից թվում է, թե նա այնքան էլ մեծ չէ, մինչդեռ ներսից նրա մասշտաբները ապշեցուցիչ են։

Բարեկարգ է պալատի շուրջը։ Դեպի պալատի մուտքը տանող սալահատակ քառուղիների երկու կողմերում տնկված են կեչու և եղևնու ծառեր։

Հրաշալի են պալատի ճեմասրահները, որոնք տարբերվում են միմյանցից իրենց առանձնահատուկ գեղեցկությամբ։ Նրանց բոլորի հատակը մարմարից է, և ամենուրեք՝ լույսերի ծով։ Մարմարյա ճեմասրահներից մեկը զարդարված է միութենական ռեսպուբլիկաների գունավոր քարերից պատրաստված պետական գերբերով։

Բոլոր ճեմասրահների սանդուղքները տանում են դեպի հսկայական դահլիճը, որը բաղկացած է պարտերից, ամֆիթատրոնից և պատշգամբից։ Դահլիճում տեղավորվում

է վեց հազար մարդ։ Դահլիճի երկարությունը 50 մետր է, լայնությունը՝ 36, իսկ բարձրությունը՝ ավելի քան 20 մետր։

Ալ-կարմիր կտորով պատված թեթև բազկաթոռների շարքերը հեռանալով բեմից՝ հետզհետե բարձրանում են։ Յուրաքանչյուր բազկաթոռի առաջամասում ստեղծված է նշումներ կատարելու հարմարություն։

Դահլիճի պատերի մակերեսը ծածկված է հացենու ոսկեգույն ճաղերով։ Պարտերի պատերի պանելները պատված են արհեստական կաշվով։ Բացմոխրագույն գորգապատ հատակը կլանում է քայլերի ձայնը։ Առաստաղի գեղեցիկ կամարները՝ ալյումինի սպիտակ գծերը, կարծես կրկնում են դահլիճում տեղավորված աթոռների շարքերը։ Առաստաղում տեղադրված են 4.500 էլեկտրական լույսի ջահեր, որոնք զուգակցված սառը լուսարձակման և կախազարդերի հետ ստեղծում են լույսերի օրիգինալ էֆեկտ։

Դահլիճի բեմը երկրում ամենամեծն է։ Նա մեկ ու կես անգամ մեծ է Մոսկվայի Մեծ Թատրոնի բեմից։ Բեմի պատի ծածանվող դրոշի ֆոնի վրա հանդիսատեսի առջև բացվում է Կոմունիստական պարտիայի հիմնադիր և սովետական ժողովրդի առաջնորդ



Վլադիմիր Իլյիչ Լենինի բարելյեֆը։ Պալատի բեմը ունի իջեցման և բարձրացման, ինչպես նաև պտտեցնելու հարմարություններ, որոնք հնարավորություն են տալիս նիստի ավարտից մի քանի րոպե անց պատրաստել այն թատերական կամ համերգային ներկայացման համար։ Մեխանիզմները բարձրացնում են դեկորատիվ մետաղյա վարագույրը և փոխարինում այն թատերականով։ Բեմը ունի նաև նորագույն սարքավորումներով հագեցած հարմարություններ, որոնք հնարավորություն են տալիս հանդիսականների համար լայնէկրան կինոնկարներ ցուցադրել։

Այդպիսի խոշոր թատերական կառույցի համար պակաս կարևոր նշանակություն չունի նաև գերազանց ակուստիկայի առկայությունը։ Դահլիճի պատերի և առաստաղի զգալի մասը պատված է ձայնակլանիչ հատուկ նյութով։ Հանդիսատեսից թաքցված յոթ հազար բարձրախոսներ դահլիճի բոլոր անկյուններն են հասցնում լսողությունը շոյող, մեղմ և խոր ձայնը։

Դահլիճի ուզածդ տեղից լավ երևում է բեմը և հավասարապես լսվում այնտեղից եկող ձայնը։ Տարբեր նիստերի ժամանակ դահլիճում նստածները կարող են լսել

հռետորների ելույթները միաժամանակ 29 տարբեր լեզուներով, մինչդեռ Նյու-Յորքում, ՄԱԿ-ի շենքում հռետորների ելույթները թարգմանվում են միայն 10 լեզվով։

Շարժասանդուղքներով (էսկալատոր) կամ մարմարյա սանդուղքներով հյուրերը բարձրանում են վերին հարկերը։ Պարկետապատ պատշգամբի հսկայական ճեմասրահը կարող է ծառայել որպես պարասրահ, իսկ 2 հազար 500 մարդու համար կախովի սրահների դահլիճը՝ որպես ճաշկերույթի դահլիճ։ Սենյակների, դահլիճների և ընդհանրապես Կրեմլի նոր պալատի զետեղարանների թիվը հասնում է ավելի քան 800-ի, որոնք կապված են միմյանց հետ անձայն շարժասանդուղքներով և արագընթաց լիֆտերով։

Իսկ որքա՜ն լավ է պալատի ներսում օդը։ Գրեթե ամենուրեք հատուկ սարքավորումներով տրվում է մաքուր օզոնով ախտահանված օդ, որը յուրաքանչյուր 12 րոպեն մեկ անգամ նորոգվում է։

Կրեմլի Համագումարների պալատում ամեն ինչ արված է այն հաշվով, որպեսզի հանդիսատեսի համար լինի լավ և հարմար։ Սկսած շարժասանդուղքներից, որոնք պարզապես վերցնում են նրան մուտքի մոտից



և հասցնում հանդերձարան, և վերջացրած երկու հազար մարդու համար նախատեսված բուֆետով ու ճեմասրահներով, տեղադրված են երկարաշարք ավտոմատ հեռախոսներ։

Այդ հոյակապ պալատում անցկացվելու են մեր պարտիայի համագումարները, Գերագույն Սովետի սեսիաները, միջազգային կոնգրեսները, ցուցադրվելու են օպերային ու բալետային լավագույն ներկայացումներ, համերգներ, լայնէկրան կինոֆիլմեր և այլն։

ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը ջերմորեն ողջունեցին կառուցողներին, որոնք չտեսնված կարճ ժամկետում ստեղծեցին Կրեմլի Համագումարների պալատը, դարձնելով այն որպես պարտիայի XXII համագումարին անգնահատելի նվեր։

Պալատի կառուցմանը մեծ օգնություն ու աջակցություն են ցույց տվել Լենինգրադի ու Վոլգոգրադի աշխատավորները, Ուրալի, Ուկրաինայի, Վրաստանի ու Հայաստանի, ինչպես նաև մեր երկրի մի շարք այլ մարզերի ու քաղաքների աշխատավորները։ Այդ գեղեցիկ ու հոյակապ պալատը կառուցվել է ժողովրդի ձեռքերով և այն ժողովրդի համար է։ Նրա դռները հյուրընկալորեն բաց կլինեն բոլոր աշխատավորների համար։

---

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

ԵՐԿԱԹԵ ԳԱՐՇԱՊԱՐ— Ամերիկյան հայտնի գրող Ջեկ Լոնդոնի վեպերից մեկի վերնագիրն է, որը դարձել է կապիտալիստական լծի ծանրությունն ու դաժանությունը մարմնացնող թևավոր արտահայտություն:

1907 թվականին հրապարակած իր այդ վեպում Ջեկ Լոնդոնը ռեալիստորեն նկարագրում է կապիտալի «երկաթե գարշապարի» հարձակումը բանվոր դասակարգի վրա՝ բուրժուական ազատության վերջին մնացորդները նրանից խլելու համար:

Երկաթե գարշապար— ֆինանսական օլիգարխիայի դիկտատուրայի սիմվոլիկ անվանումն է:

Մեր ժամանակաշրջանի մեծագույն փաստաթղթում՝ ՍՄԿՊ նոր Ծրագրում, ասված է. «...իմպերիալիստական աշխարհում ազատությունը լոկ նշանակում է ոչ միայն իրենց երկրների, այլև մոնոպոլիաների «երկաթե գարշապարի» տակ ընկնող մյուս բոլոր երկրների բանվոր դասակարգի, աշխատավոր ժողովրդի շահագործման ազատություն»:

ԿԼԵՐԻԿԱԼԻԶՄ— (լատինական «կլերիկալիս» բառից, որը նշանակում է կղերամտություն)— քաղաքական և կուլտուրական կյանքում եկեղեցու և հոգևորականության տիրապետմանը ձգտող քաղաքական ռեակ-



ցիոն ուղղություն կապիտալիստական երկրներում: Նա իր գործունեությունը ծավալում է մոնոպոլիստական կապիտալի օգտին և պայքարում ռևոլյուցիոն ու դեմոկրատական շարժման դեմ:

«Իմպերիալիզմի քաղաքական և գաղափարախոսական զինանոցում,— ասված է ՍՄԿՊ նոր Ծրագրում— հարաճուն նշանակություն է ձեռք բերում կղերամտությունը... Մոնոպոլիաները առատաձեռն կերպով ֆինանսավորում են կղերական պարտիաներին ու կազմակերպություններին, որոնք շահագործում են աշխատավորների կրոնական զգացմունքները, նրանց սնոտիապաշտությունները և նախապաշարմունքները»:

ԷԿԼԵԿՏԻԶՄ (հունարեն բառ է)— այլատար, անհամատեղելի հայացքների, տեսակետների անսկզբունքային, մեխանիկական միացում: Էկլեկտիզմի օրինակ կարող է ծառայել ժամանակակից աջ սոցիալ-դեմոկրատիայի քաղաքականությունը, որը դարձել է բանվորական շարժման ներսում բուրժուազիայի քաղաքական հենարանը: ՍՄԿՊ նոր Ծրագրում ասված է «Աջ սոցիալ-դեմոկրատիան էկլեկտիկ կերպով հին օպորտունիստական գաղափարները միացնում է բուրժուական «նորագույն» տեսությունների հետ»:

ԴԵԳՐԵԴԱՑԻԱ— ֆրանսերեն «դեգրադասիոն» բառից, որը նշանակում է անկում, աստիճանական վատթարացում: ՍՄԿՊ Ծրագրում ասված է «Հակակոմունիզմը բուրժուական գաղափարախոսության դեգրեդացիայի ծայրահեղ աստիճանի արտացոլումն է»: Իմպե-

րիալիզմի գաղափարական-քաղաքական գլխավոր զեն-
քը հակակոմունիզմն է։ Նրա հիմնական բովանդակու-
թյունն է սոցիալիստական կարգերը զրպարտելը, կո-
մունիստական պարտիաների քաղաքականությունն ու
նպատակները, մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը կեղ-
ծելը։

«ԱԶԱՏ ԱՇԽԱՐՀ»— այսպես են անվանում հակա-
կոմունիզմի «տեսաբանները» իմպերիալիստական,
բուրժուական երկրներին։ «Իրականում,— ինչպես նըշ-
ված է ՍՄԿԿ Ծրագրում,— «ազատ աշխարհը» շահա-
գործման ու իրավազրկության աշխարհ է, մարդկա-
յին արժանապատվության և ազգային պատվի ոտնա-
հարման աշխարհ, խավարամոլության և քաղաքական
ռեակցիայի աշխարհ, միլիտարիստական մոլուցքի և
աշխատավորների նկատմամբ արյունալի դատաստան-
ների աշխարհ»։

**Խմբագիր՝ Վ. Խ. ԸՆԳԻԲԱՐՅԱՆ**



Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 23 1961 г.

*ՎՖ 01936 Պատվեր 603 Տպաքանակ 8193*

*Հանձնված է արտադրության 25/XI 1961 թ.*
*Ստորագրված է տպագրության 1/XII 1961 թ.*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8.*

*Գինը 8 կոպ.*